Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 1 ՀՈՒՆՎԱՐ 1959

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

էջ

Նյութեր զրույցների համար

Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ.— Ապրում, հաղթանակում են լենինյան մեծ գաղափարները . . . . 1
Ժողովրդի բարօրության համար . . . . . . 15
ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիան . 25
Մ. ՇԱՀԲԱԶՅԱՆ.— Հայաստանի գյուղատնտեսության զարգացումը յոթնամյակում . . 31

Միջազգային թեմաներ

Մ. ՎԱՍԻԼԵՎ.— Բեռլինի հարցը . . . . . . 39

---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:



# ԱՊՐՈՒՄ, ՀԱՂԹԱՆԱԿՈՒՄ ԵՆ ԼԵՆԻՆՅԱՆ ՄԵԾ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ

Վ. ՂԱԶԱՆՋՅԱՆ

Երեսունհինգ տարի առաջ դադարեց բաբախելուց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիմնադիր, սովետական հզոր պետության ստեղծող, ամբողջ աշխարհի աշխատավոր մարդկության առաջնորդ և ուսուցիչ Վլադիմիր Իլյիչ Լենինի մեծ սիրտը:

Վլադիմիր Իլյիչ Լենինը պատմության բեմ բարձրացավ որպես կոմունիզմի մեծ հիմնադիրներ Մարքսի և Էնգելսի հանճարեղ աշակերտը, նրանց ուսմունքի և գործի հանճարեղ շարունակողն ու զարգացնողը, իմպերիալիզմի դարաշրջանի պրոլետարական ռևոլյուցիաների ղեկավարն ու տեսաբանը:

Վ. Ի. Լենինն իր ռևոլյուցիոն գործունեությունը ծավալեց այն շրջանում, երբ պրոլետարական ռևոլյուցիաների ալիքը Արևմուտքից փոխադրվում էր Արևելք, հատկա-









պես Ռուսաստան, իսկ վերջինիս բանվոր դասակարգը 19-րդ դարի վերջերից և 20-րդ դարի սկզբներից դառնում էր միջազգային բանվոր դասակարգի ավանգարդ ջոկատը։ Ռուսաստանում կապիտալիզմի արագ զարգացման հիման վրա ավելի ուժեղ չափով էր կատարվում պրոլետարիատի հեղափոխականացման պրոցեսը և ավելի սուր ձևերով էին հանդես գալիս հակամարտությունները շահագործողների և շահագործվողների միջև։ Պրոլետարիատի դասակարգային պայքարի սրումը Ռուսաստանում պարարտ հող ստեղծեց մարքսիզմի գաղափարների տարածման համար։ Վ. Ի. Լենինը իր ռևոլյուցիոն գործունեությունը ծավալեց հենց այն բանից, որ նա սկսեց կազմակերպել Ռուսաստանի բանվոր դասակարգի ռևոլյուցիոն ուժերը, ձևավորել նրա միտքն ու գործունեությունը մարքսիզմի գաղափարների հիման վրա։

Ի տարբերություն եվրոպական բանվորական շարժման լիդերների, որոնք կտրված էին մասսաներից և գերազանցաբար վերացականորեն էին դատում բանվորական շարժման մասին, Լենինը հենց սկզբից էլ իրեն նետեց կյանքի հորձանուտը, կապվեց բանվորական մասսային, մասնակցեց նրա



առաջին մարքսիստական խմբակներին և դարձավ այդ մասսաների սիրելին։ Այդ մասին են վկայում այն բազմաթիվ հուշերը, որ թողել են Լենինի մասին այն բանվորները, որոնք հենց սկզբից հանդիսացել են Լենինի կողմից ղեկավարվող «Բանվոր դասակարգի ազատագրման պայքարի միության» անդամները՝ Ի. Վ. Բաբուշկինը, Վ. Ա. Կնյազևը, Մ. Սիլվինը և ուրիշներ, որոնց կազմակերպել, դաստիարակել և ղեկավարել է Լենինը։ «Ահա նա, մեր առաջնորդը, մեր լիդերը, մեր տեսաբանը, նրա հետևից գնալով մենք չենք կորչի.— այսպես էր մտածում յուրաքանչյուրը և մեզ համակում էր բուռն [illegible]կություն, որ մենք հատկապես մե՛ր խմբակում, մեր կազմակերպության մեջ ունենք այդ պայծառ գլուխը»,— գրում է բանվոր Մ. Սիլվինը իր հիշողություններում։

Դեռևս անցյալ դարի 90-ական թվականներին Լենինը Ռուսաստանի մարքսիստական բանվորական խմբակները միավորեց մի միասնական միության մեջ և ստեղծեց պրոլետարիատի նոր տիպի պարտիա, որը դարձավ ցարիզմի և կապիտալիզմի դեմ բանվոր դասակարգի կողմից մղվող պայքարի կազմակերպող և ղեկավարող ռևոլյուցիոն ուժը։

Վ. Ի. Լենինը ստեղծելով նոր տիպի պարտիա, միաժամանակ մշակեց այդ պարտիայի պայքարի տակտիկան ու ստրատեգիան։ Լենինը պարտիային պայքարի հանեց միջազգային և ռուսական ռևիզիոնիզմի դեմ, որը այդ շրջանում հանդես էր գալիս «լեգալ մարքսիզմի», «էկոնոմիզմի» դիմակով։ Այդ գործում հսկայական դեր կատարեցին Վ. Ի. Լենինի «Ի՞նչ են «ժողովրդի բարեկամները» և ինչպե՞ս են նրանք մարտնչում սոցիալ-դեմոկրատների դեմ», «Կապիտալիզմի զարգացումը Ռուսաստանում», «Ի՞նչ անել», «Սոցիալ-դեմոկրատիայի երկու տակտիկան», «Մատերիալիզմ և էմպիրիոկրիտիցիզմ» և մյուս աշխատությունները։ Ռուսական առաջին ռևոլյուցիայի տարիներին է՛լ ավելի մեծ ուժով դրսևորվեց Վ. Ի. Լենինի կազմակերպական հանճարը։ Նա այդ էտապում վճռական պայքար ծավալեց միջազգային օպորտունիզմի և մենշևիզմի դեմ։ Սահմանազատվելով մենշևիզմից, նա ստեղծեց հետևողական ռևոլյուցիոն մարքսիստական պարտիա, բոլշևիկյան պարտիա, որը դարձավ ռուսական պրոլետարիատի և աշխատավորական լայն խավերի ավանգարդ ուժը։ Մեծ եղավ Լենինի դերը 1914—1918 թ.թ. համաշխարհային իմպերիալիստական



առաջին պատերազմի ժամանակաշրջանում միջազգային և ռուսական բուրժուազիայի ու նրա կամակատար երկրորդ ինտերնացիոնալի պարտիաների նացիոնալիստական քաղաքականությունը մերկացնելու ուղղությամբ։ 1914 թվականին պատերազմի մասին գրած իր հոդվածներից մեկում Վ. Ի. Լենինը գրում է. «Ներկա պատերազմը իմպերիալիստական է, և հենց դա է նրա հիմնական բնույթը... Այն սոցիալիստները, որոնք իրենց հաշիվ չեն տվել, որ տվյալ պատերազմն իմպերիալիստական է, որոնք այդ բանը պատմականորեն չեն քննում, ոչինչ չեն հասկացել այս պատերազմից, և նրանք ընդունակ են այն պատկերացնել մանկան պես միամիտ կերպով, այն ձևով, թե իբր գիշերը մեկը բռնել է մյուսի կոկորդից, և հարևաններն էլ հարկադրված են փրկել հարձակման զոհին կամ թե երկչոտ կերպով «կողպեքի տակ» պահվել (Պլեխանովի արտահայտությունն է) կռվից»։ Վ. Ի. Լենինը կատեգորիկ կերպով հայտարարում է, որ մենք թույլ չենք տա, որ մեզ խաբեն բուրժուական խորհրդատուները։ Նա այդ հոդվածում պարզ հայտարարում է. «Մեր առջև իմպերիալիստական պատերազմն է, և սոցիալիստների խնդիրն է՝ «ազգային» պատե-

րազմը վերածել քաղաքացիականի։ Դեպի սոցիալիզմը չի կարելի անցնել առանց ազգային շրջանակները կոտրելու, ինչպես որ ֆեոդալիզմից չէր կարելի կապիտալիզմին անցնել առանց ազգային գաղափարների»։

Վ. Ի. Լենինի կոչով, բոլշևիկյան պարտիան միակ պարտիան էր, որ գործնականորեն պայքարեց «ազգային» իմպերիալիստական պատերազմը քաղաքացիականի վերածելու համար։

1917 թվականի բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիայից հետո Վ. Ի. Լենինը էմիգրացիայից Ռուսաստան վերադարձավ, որպեսզի կարողանա անմիջապես ղեկավարել հասունացող պրոլետարական-սոցիալիստական ռևոլյուցիան։

1917 թվականին Լենինի անմիջական ղեկավարությամբ Ռուսաստանի ռևոլյուցիոն-մարքսիստական պարտիան գլխավորեց ժողովրդական երեք ռևոլյուցիաները և 1917 թվականի հոկտեմբերին հաղթանակ նվաճեց՝ առհավետ տապալելով ցարիզմի և կապիտալիզմի դարավոր տիրապետությունը, դրանով իսկ բացեց մարդկության պատմության նոր դարագլուխ։ Վ. Ի. Լենինը հենվելով Մարքսի և Էնգելսի ուսմունքի վրա, մշակեց սոցիալիստական նոր հասարակար-



գի կառուցման թեորիան, որի հիման վրա բարձրացավ և կառուցվեց աշխարհում առաջին բանվորա-գյուղացիական պետությունը։ Լենինի կողմից ստեղծված Սովետական առաջին երկիրը իր գոյության այս տարիների ընթացքում աճեց և հզորացավ թե՛ տնտեսական, թե՛ կուլտուր-տեխնիկական, թե՛ ռազմական տեսակետից, իրենից ետ թողնելով կապիտալիստական այնպիսի առաջավոր երկրների, ինչպես Անգլիան, Ֆրանսիան, Գերմանիան է և իր զարգացմամբ ընդհուպ մոտեցավ կապիտալիզմի ամենազարգացած երկրի՝ ԱՄՆ-ի մակարդակին։ Լենինի կողմից ստեղծված Սովետական առաջին պետությունը և նոր սոցիալիստական հասարակարգը իր գոյության այս տարիների ընթացքում անցավ մեծ փորձությունների բովով։ Կոմունիստական պարտիայի փորձված և իմաստուն ղեկավարությամբ, Սովետական պետությունը հաղթանակով դուրս եկավ ինչպես քաղաքացիական, այնպես էլ Հայրենական Մեծ պատերազմներից։ Այդ պատերազմների բոցերի մեջ է՛լ ավելի ամրապնդվեց Սովետական երկրի ուժն ու հզորությունը, նրա մարդկանց բարոյա-քաղաքական միասնական ուժը և ռազմական պոտենցիալը։

Մեծ Լենինին քիչ վիճակվեց ապրել ու անմիջապես ղեկավարել իր ստեղծած սոցիալիստական նոր երկիրը, նրա էկոնոմիկան, տեխնիկան ու կուլտուրան։ Սակայն իր հանճարեղ կանխատեսության շնորհիվ նա մշակեց և Կոմունիստական պարտիային ավանդ թողեց սոցիալիստական ու կոմունիստական հասարակարգի կառուցման հանճարեղ գաղափարները և սկզբունքները։ Սովետական պետությունը զինված սոցիալիզմի կառուցման լենինյան պլաններով, պատմական կարճ ժամանակամիջոցում կարողացավ իրականացնել երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման ծրագրերը։ Դեռևս սովետական կարգերի հաստատման առաջին տարիներին Լենինը կանխատեսում էր մեր Հայրենիքի երջանիկ ապագան։ Նա մեր երկիրը տեսնում էր հարուստ ու հզոր, ծածկված երկաթուղիներով, նորանոր գործարաններով, զարգացած արդյունաբերությամբ, էլեկտրական էներգիայի և առաջավոր տեխնիկայի վրա փոխադրված գյուղատնտեսությամբ։ Հեռու չէ այն երջանիկ ժամանակը,— ասում էր Լենինը,— երբ աշխատավոր մասսաները կհաստատեն սոցիալիստական հասարակարգը։



Կատարելով լենինյան պատգամները Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ հինգ հնգամյակների ընթացքում մեր երկիրը մեծ հաղթանակներ նվաճեց ինդուստրիայի, տեխնիկայի և կուլտուրայի ասպարեզում։ Այդ տարիների ընթացքում ՍՍՌՄ աշխատավորները ոչ միայն վերացրին Ռուսաստանի դարավոր հետամնացությունը, այլև արդյունաբերական արտադրության ծավալի տեսակետից գրավեցին առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղը աշխարհում։ Այդ տարիների ընթացքում իրագործվեց կուլտուրական ռևոլյուցիայի լենինյան հոյակապ ծրագիրը, զարգացան գիտությունը, արվեստը, ժողովրդական կրթությունը, առաջավոր տեխնիկան։ Ուսուցման բոլոր ձևերում ՍՍՌՄ-ում այժմ ընդգրկված է ավելի քան 50 միլիոն մարդ։ Ներկայումս ՍՍՌՄ-ում կան 765 բարձրագույն ուսումնական հաստատություններ, 3500 տեխնիկումներ և միջնակարգ մասնագիտական ուսումնական այլ հաստատություններ, որտեղ սովորում է ավելի քան 4 միլիոն մարդ։ Ժողովրդական տնտեսության մեջ բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական կրթություն ունեցող մասնագետների թիվը

կազմում է մոտ 7 ու կես միլիոն, այսինքն՝ 1913 թվականից 39 անգամ ավելի։ Այս տարիների ընթացքում խոշոր թռիչքներ կատարեց սովետական առաջավոր տեխնիկական գիտությունը։ Սովետական գիտնականները կարողացան առաջինը արձակել երկրի արհեստական արբանյակներ և դեպի լուսին բաց թողնել տիեզերական հրթիռը, դրանով իսկ նոր դարագլուխ բացել տիեզերական տարածությունները յուրացնելու գործում։ Մեր երկրում առաջինը սկսեց աշխատել ատոմային էլեկտրակայանը։ 1958 թվականին գործարկվեց 600 հազար կիլովատ կարողությամբ աշխատող աշխարհում ամենախոշոր ատոմային էլեկտրակայանի հարյուր հազար կիլովատ հզորությամբ առաջին հերթը, ավարտվում է «Լենին» ատոմային սառցահատի կառուցումը։

Լենինը ավանդ թողեց ո՛չ միայն սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գաղափարները, նա միաժամանակ մշակեց Սովետական Միության ազգերի և առհասարակ բոլոր ազգերի համերաշխ զարգացման պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարները։

«Մենք ազգային թշնամության, ազգային



պառակտման, ազգային առանձնացվածության հակառակորդներ ենք,— գրում էր Վ. Ի. Լենինը,— մենք միջազգայնականներ, ինտերնացիոնալիստներ ենք»։

Սովետական Միության Կոմունիստական պարտիան այս տարիների ընթացքում աչքի լույսի պես պահպանեց լենինյան այս պատգամը։ Պայքարելով նացիոնալիզմի ամեն գույնի արտահայտությունների դեմ, պարտիան ամրապնդեց սովետական ազգերի եղբայրական բարեկամությունը։ Կենսագործելով լենինյան ազգային քաղաքականությունը, անցյալում հետամնաց ազգային ռեսպուբլիկաները դարձան ժամանակակից հզոր ինդուստրիայի և առաջավոր գյուղատնտեսության երկրներ։

Սովետական իշխանության տարիներին Միջին ասիական ռեսպուբլիկաներում և Ղազախստանում արդյունաբերության արտադրանքը աճել է 50 անգամ, Անդրկովկասի ռեսպուբլիկաներում՝ 30 անգամ, Մերձբալթիկայի ռեսպուբլիկաներում՝ (1940 թվականի համեմատությամբ) 9,5 անգամ։ ՍՄԿՊ XX համագումարից հետո էլ ավելի ընդարձակվեցին ազգային ռեսպուբլիկաների իրավունքները տնտեսական և կուլտուրական շինարարության գծով։ Այդ բա-

նը հնարավորություն է տալիս մեծ չափերով հանդես բերելու նախաձեռնությունը տեղական ռեսուրսները լայնորեն օգտագործելու, յուրաքանչյուր ռեսպուբլիկայի էկոնոմիկան և կուլտուրան արագ զարգացնելու ուղղությամբ։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների յոթնամյա պլանները նորանոր հեռանկարներ են բացում սովետական ժողովրդի նյութական բարեկացության, գիտության, տեխնիկայի և կուլտուրայի հետագա զարգացման ուղղությամբ։

Վ. Ի. Լենինի կողմից ստեղծված սովետական սոցիալիստական նոր հասարակարգը իր գոյության տարիների ընթացքում դարձավ այն լուսատու ջահը, որի հետևից այսօր քայլում են սոցիալիզմի նոր երկրները թե՛ Արևելքում և թե՛ Արևմուտքում։

Լենինյան գաղափարները ողջ մարդկությանը ցույց տվեցին իմպերիալիզմի լծից, գաղութային ճնշումից և ավերիչ պատերազմներից ազատագրվելու ճշմարիտ ուղիները։ Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո սկսվեց պատմական այն խոշոր իրադարձությունը, որի մասին Վ. Ի. Լենինը մարգարեաբար ասել էր դեռ 1922 թվակա-



նին։ Նա ասում էր, որ Հոկտեմբերյան ռևոլյուցիան կդառնա Ասիայի և Արևելքի ժողովուրդների զարթոնքի սկիզբը։ Ասիայի ժողովուրդների հարյուր միլիոններին,—ասում էր Լենինը,—վիճակված է մոտալուտ ապագայում, մեզնից հետո, հանդես գալ պատմական նախաբեմում։ Լենինյան այդ մեծ նախագուշակությունը կատարվեց մեր աչքի առջև, երբ 600 միլիոնանոց չին մեծ ժողովուրդը թոթափելով գաղութային ստրկության դարավոր լուծը, կանգնեց զարգացման սոցիալիստական ուղու վրա։ Չին ժողովրդից բացի իմպերիալիզմի գաղութային լծից ազատագրվեցին Արևելքի մի շարք ժողովուրդներ, որոնցից մի մասը (ինչպես օրինակ, Վյետնամը, Հյուսիսային Կորեան) ստեղծեցին դեմոկրատական կարգեր և մեծ հաջողությամբ իրենց երկրում գցում են սոցիալիստական կյանքի հիմքերը։ Ասիայի երկրներից հետո ազգային ազատագրական զարթոնք սկսվեց աֆրիկյան մայր ցամաքում, որի միլիոնավոր բնիկ ժողովուրդները, առաջին հերթին արաբական ազգերը, թոթափելով ֆրանսիական, անգլիական, ամերիկյան իմպերիալիստների գաղութային տիրապետության շղթաները ստեղծեցին իրենց ազգային սուվերեն պետությունները։

Ազատագրված Ասիայի և Աֆրիկայի ժողովուրդները ո՛չ միայն ինքնուրույն կերպով վճռում են իրենց սեփական բախտը, այլև այսօր ակտիվորեն մասնակցում են պատերազմի հրձիգների դեմ մղվող մեծ շարժմանը, ամբողջ մարդկության ապագայի և ճակատագրի վճռման արդար գործին։ Երեկվա գաղութային և կիսագաղութային երկրների ժողովուրդները իմպերիալիստական գաղութային սիստեմի դեմ մղած և մղվող պայքարում հսկայական աջակցություն ստացան և ստանում են Սովետական սոցիալիստական հզոր երկրից, որը հանդիսանում է լենինյան գաղափարների կենդանի հուշարձանը։

Վլադիմիր Իլյիչ Լենինի որպես մեծագույն մտածողի և տեսաբանի, անզուգական ռևոլյուցիոն գործչի և կազմակերպչի, իբրև մեծ հումանիստի ու զգայուն հոգու տեր մարդու մասին գրել են բազմաթիվ մարդիկ, սկսած հարազատներից մինչև մեծագույն գրողներն ու քաղաքական գործիչները։

Մեծ Գորկու խոսքերով ասած «...ի դեմս Լենինի աշխարհը կորցրեց մի մարդու, որը իր ժամանակակից բոլոր մեծ մարդկանցից առավել պայծառությամբ էր իր մեջ մարմնավորում հանճարեղությունը»։

---

# ԺՈՂՈՎՐԴԻ ԲԱՐՕՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Հարազատ Կոմունիստական պարտիայի պանծալի պատմության մեջ իր պատվավոր տեղը գրավեց անցյալ ամսի 15-ից մինչև 19-ը տեղի ունեցած ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը, որը քննարկեց ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը՝ վերջին հինգ տարում գյուղատնտեսության զարգացման արդյունքների և գյուղատնտեսական մթերքների արտադրությունը հետագայում ավելացնելու մասին։

Հանրագումարի բերելով վերջին հինգ տարում գյուղատնտեսության զարգացման արդյունքները, ընկեր Ն. Ս. Խրուշչովը նշեց, որ պարտիայի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ ծավալվեցին կոլտնտեսային կարգի ուժերը, գործի դրվեցին նրա ռեզերվները, ռեալ հիմքի վրա դրվեց գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու և երկրի գյուղատնտեսության մեջ աշխատանքի ավելի բարձր արտադրողականության հասնելու խնդիրը։ Դա անգնահատելի նշանա-

կություն ունի կոմունիստական շինարարու-
թյան գործի համար, ժողովրդի բարեկեցու-
թյան բարձրացման համար։

Այժմ ամենքին պարզ է, որ պարտիան մեծ հաջողությամբ կարողացավ լուծել երկրում գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման տնտեսական կարևորագույն հարցերը։

Մեր պարտիան Կենտկոմի Սեպտեմբերյան (1953) և հաջորդ պլենումներում, ՍՄԿՊ XX համագումարում մշակելով գյուղատնտեսության բոլոր ճյուղերի վերելքի հեղափոխիչ միջոցառումներ և դրանք հաստատակամորեն կենսագործելով կյանքում, հաղթահարեց հինգ տարի առաջ գյուղատնտեսության ղեկավարման գործում եղած թերությունները, վերացրեց կոլտնտեսային շինարարության մեջ լենինյան քաղաքականության աղավաղումները։ Դրա շնորհիվ վերականգնվեց գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմամբ կոլտնտեսականների, գյուղի բոլոր աշխատավորների նյութական շահագրգռվածության սկզբունքը, կոլտնտեսություններն ու սովխոզները ամրապնդվեցին մասնագետների, մեխանիզատորների և ղեկավար աշխատողների կադրե-



րով։ Մտցվեց պլանավորման նոր կարգ, որն ասպարեզ տվեց կոլտնտեսականների նախաձեռնությանը։ Իրականացվեց մեքենա-տրակտորային կայանների վերակազմումը, մտցվեցին գյուղատնտեսական մթերքների մթերումների նոր կարգ և պայմաններ, որը կարևորագույն նշանակություն ունեցավ կոլտնտեսային կարգի հետագա զարգացման, գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրության աճի, բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի ամրապնդման համար։ Գյուղատնտեսությունը հագեցվեց նորագույն տեխնիկայով։ Անցած հինգ տարում գյուղատնտեսության մեջ պետության կապիտալ ներդրումները կազմեցին ավելի քան 97 միլիարդ ռուբլի։

Այդ նույն ժամանակաշրջանում մեծ աշխատանք կատարվեց խամ և խոպան հողերի յուրացման գործում, 36 միլիոն հեկտար հող դարձվեց մշակելի, որը նպաստեց գյուղատնտեսության նոր վերելքին։ Առ 10-ը դեկտեմբերի 1958 թվականի, 1953 թվականի համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, հացահատիկի մթերումները ավելացան 91 տոկոսով, այդ թվում ցորենինը՝ 2,3 անգամ, շաքարի ճակնդեղինը՝ 2,2 անգամ, շաքարի արտադրությունը՝ 54



տոկոսով, կարտոֆիլի մթերումները՝ 30, բանջարեղենինը՝ 80, բամբակինը՝ 16 տոկոսով և այլն: Մեծ չափերով աճեց գյուղատնտեսության համախառն արտադրանքը: Եթե 1949—1953 թվականներին գյուղատնտեսության համախառն արտադրանքը տարեկան միջին հաշվով կազմում էր 300 միլիարդ ռուբլուց մի փոքր պակաս, ապա 1954—1958 թվականներին համապատասխան գներով այն կազմում էր ավելի քան 400 միլիարդ ռուբլի: Անցած հինգ տարում երկրում հացահատիկի արտադրությունը ավելացել է համարյա 3,5 միլիարդ փթով, միսինը (սպանդանոցային քաշով)՝ 2,1 միլիոն տոննայով, կաթինը՝ 21,3 միլիոն տոննայով: 1958 թվականին հացահատիկի համախառն բերքը կազմեց 8,5 միլիարդ փութ, կամ 1953 թվականի համեմատությամբ 69 տոկոսով ավելի: Գերակատարված է հացամթերումների պլանը. 1958 թվականին պետական ռեսուրսների համար ստացվել է 3,5 միլիարդ փութ հացահատիկ: Այդքան հացահատիկ մեր երկիրն ամբողջ պատմության ընթացքում չի ունեցել:

Խոշոր հաջողություններ են ձեռք բերվել հանրային անասնաբուծության զարգացման գործում: Մսի արտադրությունը սպանդանո-



ցային քաշով 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացավ 2,1 միլիոն տոննայով, կաթինը՝ 21,3 միլիոն տոննայով, բրդինը՝ 86 հազար տոննայով, ձվինը՝ 7,4 միլիարդ հատով: Կոլտնտեսություններում կովի կիթը 1960 թվականին 1.700 կիլոգրամի հասցնելու և կաթի պետական մթերումները 1,8 անգամ ավելացնելու խնդիրը, որ դրել էր Կենտկոմի հունվարյան (1955 թ.) պլենումը, գերակատարվեց արդեն 1957 թվականին, այսինքն՝ վեց տարվա փոխարեն երեք տարում: Եթե 1953 թվականին կուտակվեց միայն 32 միլիոն տոննա սիլոս, ապա 1958 թվականին կոլտնտեսություններն ու սովխոզները կուտակել են 148 միլիոն տոննա սիլոս, այդ թվում 108 միլիոն տոննա եգիպտացորենի սիլոս:

Այժմ Սովետական Միությունը կաթի և յուղի արտադրության ընդհանուր ծավալով դուրս է եկել աշխարհում առաջին տեղը և բրդի արտադրությամբ գրավում է երկրորդ տեղը:

Պլենումը նշեց, որ մեծ աշխատանք է կատարված նաև սովխոզների ամրապնդման և զարգացման բնագավառում: Անցած հինգ տարում գլխավորապես խոպան հողերում ստեղծվել են շատ նոր սովխոզներ և ընդար-

ձակվել փոյուլթյուն ունեցողները: Սովխոզների հիմնական ֆոնդերը 1958 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, ավելացել են 2,3 անգամ: Այժմ սովխոզները արտադրում և պետությանն են հանձնում ավելի շատ գյուղատնտեսական մթերքներ: 1958 թվականին սովխոզները պետությանը հանձնել են 1 միլիարդ 371 միլիոն փութ հացահատիկ, այնինչ՝ 1953 թվականին նրանք հանձնել էին ընդամենը 225 միլիոն փութ հացահատիկ: Սովխոզները խոշոր հաջողություններ ունեն նաև անասնաբուծության զարգացման բնագավառում: 1958 թվականին սովխոզները պետությանը հանձնեցին 4 միլիոն 900 հազար տոննա կաթ, 1953 թվականի 1 միլիոն 855 հազար տոննայի փոխարեն, 1 միլիոն 240 հազար տոննա միս, 1953 թվականի 637 հազար տոննայի փոխարեն և այլն:

Նկատի ունենալով մեր երկրի աշխատավորների կենսական շահերը պլենումը միջոցառումներ մշակեց հացահատիկի արտադրությունն ավելացնելու մասին: Այսուհետև ևս,— ասված է պլենումի որոշման մեջ,— գյուղատնտեսության զարգացման կարևորագույն խնդիրը համարել հացահատիկի արտադրության ըստ ամենայնի ավելացումը



այն հաշվով, որպեսզի, առաջիկա յոթնամյակի կոնտրոլ թվերին համապատասխան, 1965 թվականին երկրում հացահատիկի համախառն բերքը հասցվի 10—11 միլիարդ փթի: Հացահատիկի ավելացման գլխավոր ու վճռական աղբյուրը բերքատվության բարձրացումն է:Խնդիր է դրվում առաջիկա յոթնամյակում հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը բարձրացնել միջին հաշվով հեկտարից երեք-չորս ցենտներով:

Պլենումը մեծ կարևորություն տալով տեխնիկական կուլտուրաների, կարտոֆիլի, բանջարեղենի ու մրգերի արտադրությունն ավելացնելուն, խնդիր դրեց բանջարեղենի արտադրությունը հասցնել բնակչության պահանջմունքները լիովին բավարարող չափերի, իսկ մրգերի ու հատապտուղների արտադրությունն ավելացնել առնվազն 2 անգամ և խաղողինը՝ առնվազն 4 անգամ: Բամբակի բերքատվությունը բարձրացնելու նպատակով պլենումը պահանջեց լրիվ չափով օգտագործել բամբակի ցանքի քառակուսի-բնային եղանակի առավելությունները, ձեռքով կատարվող չանաքից անցնել մեքենայական բերքահավաքին:

Նշելով հանրային անասնաբուծության զարգացման բնագավառում ձեռք բերած

բոլոր հաջողությունները, պլենումը որոշեց առաջիկա յոթնամյակում խիստ ավելացնել անասունների և թռչունների բոլոր տեսակների գլխաքանակը, բարձրացնել անասնաբուծության մթերատվությունը, այն հաշվով, որ 1965 թվականին մսի արտադրությունը սպանդանոցային քաշով Հայաստանում հասնի առնվազն 16 միլիոն տոննայի, կաթինը՝ 100—105 միլիոն տոննայի, բրդինը՝ մոտավորապես 548 հազար տոննայի և ձվինը՝ 37 միլիարդ հատի: Խնդիր է դրվում ըստ ամենայնի ավելացնել մսի արտադրությունը: Դրա հետ միասին պահանջվում է կոլտնտեսություններում ու սովխոզներում անասնաբուծության զարգացման հիմնական ցուցանիշը համարել կովերի խտությունը հարյուր հեկտար հողի դիմաց:

Ինչպես հայտնի է անասնաբուծության հետագա զարգացման գործում վճռական նշանակություն ունի կերի բազայի ամրապնդումը և ամենից առաջ եգիպտացորենի արտադրության ավելացումը: Պլենումը խնդիր դրեց լայն պայքար ծավալել հեկտարից 500—600 ցենտներ, իսկ անբավարար չափով խոնավ շրջաններում՝ մոտավորապես 300 ցենտներ եգիպտացորենի կանաչ զանգված (ցողուններ ու կողրեր) ստանալ, որը բոլոր



կոլտնտեսություններին ու սովխոզներին հնարավորություն կտա ունենալու լիուլի կեր:

Սովխոզների աշխատանքը բարելավելու վերաբերյալ պլենումը խնդիր դրեց բարձրացնել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բերքատվությունը, ավելացնել անասունների գլխաքանակը, նրանց մթերատվությունը և դրա հետ մեկտեղ խնայողաբար ծախսել նյութական ռեսուրսները և դրամական միջոցները, լրիվ օգտագործել հացահատիկի, մսի, կաթի և գյուղատնտեսական մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու բոլոր հնարավորությունները, իջեցնել գյուղատնտեսական և անասնաբուծական մթերքների ինքնարժեքը:

Այնուհետև պլենումը ծավալուն որոշում ընդունեց կոլտնտեսությունների հանրային տնտեսությունն ամրապնդելու և կոլտնտեսությունների նյութական բարեկեցությունը բարձրացնելու, յոթնամյա պլանի հիմնական առաջադրանքների և գյուղատնտեսության ղեկավարման մի քանի հարցերի մասին:

Միահամուռ կերպով հավանություն տալով գյուղատնտեսական հարցերի վերաբերյալ ՍՄԿԿ Կենտկոմի նախագահության քաղաքական գծին ու պրակտիկ գործունեությանը, պլենումը միաժամանակ դատապարտեց Մա-

լենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի, Շեպիլովի հակապարտիական խմբի խայտառակ գործունեությունը, որը կատաղի կերպով պայքարում էր երկրի և ժողովրդի համար կենսականորեն կարևոր նշանակություն ունեցող հարցերի լուծման գործում պարտիայի քաղաքականության դեմ, հանդես էր գալիս ՍՄԿՊ Կենտկոմի Սեպտեմբերյան և հաջորդ պլենումների որոշումների դեմ, ձգտում էր վիժեցնել ներքին ու արտաքին քաղաքականության բոլոր կարևորագույն հարցերում պարտիայի XX համագումարի մշակած կուրսի իրականացումը։

Հակապարտիական արգահատելի խումբը մերկացված ու ջախջախված է ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի կողմից, դեն շպրտված պարտիայի և ժողովրդի կողմից։

Սովետական ժողովրդի կյանքում խոշոր քաղաքական իրադարձություն էր ՍՄԿՊ Դեկտեմբերյան պլենումը, որը շատ բեղմնավոր աշխատանք կատարեց մեր երկրում գյուղատնտեսական մթերքների արտադրության հետագա ավելացման խնդիրները փայլուն կերպով լուծելու գործում։

---

## ՍՍՌՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՐԿՐՈՐԴ ՍԵՍԻԱՆ

Մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում 1958 թվականի դեկտեմբերի 22-ին բացվեց ՍՍՌՄ հինգերորդ գումարման Գերագույն Սովետի երկրորդ սեսիան։

Սեսիան քննարկեց հետևյալ հարցերը՝

1. ՍՍՌՄ 1959 թվականի Պետական բյուջեի մասին և 1957 թվականի Պետական բյուջեի կատարման մասին։

2. Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին։

3. «ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քրեական օրենսդրության հիմունքները», «Պետական հանցագործությունների համար քրեական պատասխանատվության մասին», «Զինվորական հանցագործությունների համար քրեական պատասխանատվության մասին», «ՍՍՌ Միության, միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկանե-

րի դատարանակազմության օրենսդրության հիմունքները», «Զինվորական տրիբունալների կանոնադրությունը», «ՍՍՌ Միության և միութենական ռեսպուբլիկաների քրեական դատավարության հիմունքները» օրենքների նախագծերի մասին։

4. ՍՍՌՄ Կոնստիտուցիայի 48-րդ և 83-րդ հոդվածներում փոփոխություններ ու լրացումներ մտցնելու մասին և ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագրերի հաստատումը։

Օրակարգի առաջին հարցի վերաբերյալ սեսիայում զեկուցումով հանդես եկավ ՍՍՌՄ ֆինանսների մինիստր, դեպուտատ Ա. Գ. Զվերևը։

1959 թվականի ՍՍՌՄ Պետական բյուջեն կազմում է. եկամուտների գծով՝ 722,7 միլիարդ ռուբլի, ծախսերի գծով՝ 707,2 միլիարդ ռուբլի, այսինքն՝ ծախսերի նկատմամբ եկամուտների 15,5 միլիարդ ռուբլու գերազանցումով։ 1958 թվականի համեմատությամբ բյուջեի եկամուտները ավելանում են 61,6 միլիարդ ռուբլով, կամ 9,3 տոկոսով, իսկ ծախսերը՝ 68,7 միլիարդ ռուբլո, կամ 10,8 տոկոսով։

Միութենական ռեսպուբլիկաների Պետական բյուջեները նախատեսված են 343,1 մի-



լիարդ ռուբլի գումարով կամ 19,6 միլիարդով ավելի, քան 1958 թվականին։

Նախատեսված է 1959 թվականին ժողովրդական տնտեսության զարգացման համար ծախսել 308,7 միլիարդ ռուբլի՝ 1958 թվականի 257,2 միլիարդ ռուբլու փոխարեն սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար՝ 232 միլիարդ ռուբլի՝ 1958 թվականի 212,8 միլիարդ ռուբլու փոխարեն և այլն։

Ժողովրդական տնտեսության համար հատկացված ընդհանուր գումարից արդյունաբերության ֆինանսավորումը կազմում է 252,4 միլիարդ ռուբլի, այդ թվում բյուջեից՝ 145,3 միլիարդ ռուբլի և ձեռնարկությունների շահույթի, ամորտիզացիոն մասնհանումների ու ներքին ռեսուրսների մոբիլիզացման հաշվին՝ 107,1 միլիարդ ռուբլի։ Գյուղատնտեսության հետագա զարգացման համար բյուջեով հատկացվում է 30,3 միլիարդ ռուբլի։ Տրանսպորտի ու կապի ֆինանսավորման համար նախատեսվում է ավելի քան 25 միլիարդ ռուբլի։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին յոթնամյակի կոնտրոլ թվերով նախատեսված է աշխատավորների կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման միջոցառումների

լայն ծրագիր։ Դրա լավագույն ապացույցն է հանդիսանում այդ նպատակի համար հատկացումների անընդհատ աճը։ 1959 թվականին այդ ծախսերը, 1958 թվականի համեմատությամբ, կավելանան 19,2 միլիարդ ռուբլով և կկազմեն 232 միլիարդ ռուբլի։ Աճում են նաև լուսավորության, գիտության զարգացման, առողջապահության ու ֆիզիկական կուլտուրայի, պետական սոցիալական ապահովագրության ու ապահովության հատկացումները, բազմազավակ ու միայնակ մայրերի նպաստները, կենսաթոշակների վճարումը։

Խոշոր միջոցներ են հատկացվում բնակարանային շինարարությանը։ Այդ նպատակով 1959 թվականին հատկացվում է 41,4 միլիարդ ռուբլի կամ գրեթե 5 միլիարդ ռուբլով ավելի, քան 1958 թվականին։

Գերագույն Սովետի սեսիան միահամուռ կերպով հաստատեց ՍՍՌ Միության 1959 թվականի Պետական բյուջեն։

Այնուհետև Սեսիան անցնում է օրակարգի երկրորդ հարցի քննարկմանը՝ Կյանքի հետ դպրոցի կապի ամրապնդման և երկրում ժողովրդական կրթության սիստեմի հետագա զարգացման մասին։

Այս հարցի շուրջը ելույթ ունեցող դեպու-



տատները միահամուռ կերպով պաշտպանում են միջնակարգ և բարձրագույն դպրոցի վերակառուցման վերաբերյալ պարտիայի ու կառավարության կողմից ձեռնարկած միջոցառումները։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում նախատեսվում է ժողովրդական կրթության նշանակալից զարգացում։ 1965 թվականին տարրական, յոթնամյա ու միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը կհասնի 38—40 միլիոնի՝ 1958 թվականի 30 միլիոնի դիմաց։ Զգալիորեն մեծանալու է սովորողների թիվը բանվոր ու գյուղական երիտասարդության դպրոցներում, պրոֆեսիոնալ-տեխնիկական դպրոցներում, ինչպես նաև մեծահասակների դպրոցներում։ Գիշերօթիկ դպրոցներում սովորողների թիվը 1965 թվականին կկազմի առնվազն 2 միլիոն 500 հազար՝ 1958 թվականի 180 հազարի դիմաց, այսինքն՝ կմեծանա 14 անգամ։ 1959—1965 թվականների ընթացքում բարձրագույն ուսումնական հաստատությունները երկրին կտան 2 միլիոն 300 հազար մասնագետ՝ 1952—1958 թվականների մեկ միլիոն 700 հազարի դիմաց։

Թեզիսներում մեծ տեղ է տրվում ՍՍՌՄ բարձրագույն կրթության հետագա կատարելագործմանը։ Բարձրագույն կրթության սիստեմի վերակառուցումը պետք է նպաստի բարձորակ մասնագետների պատրաստմանը և է՛լ ավելի բարելավի ուսանողների կոմունիստական դաստիարակության գործը։

Միջնակարգ և բարձրագույն դպրոցի վերակառուցումը շոշափում է միլիոնավոր մարդկանց, ամբողջ սովետական ժողովրդի շահերը, ահա թե ինչու սովետական ժողովուրդը այնքան ջերմորեն ընդունեց և ողջունեց պարտիայի ու կառավարության այդ մեծ հոգատարությունը և իր պատրաստակամությունն է հայտնում անշեղորեն կենսագործելու այդ առաջադրանքները։

Այնուհետև Գերագույն Սովետի սեսիան անցնում է օրակարգի 3-րդ և 4-րդ հարցերի քննարկմանը։ Սեսիան հավանություն է տալիս և միաձայն ընդունում է առաջադրված օրենքները, փոփոխություն է մտցնում Կոնստիտուցիայի համապատասխան հոդվածների մեջ ու հաստատում ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության ընդունած Հրամանագրերը։ Դրանով էլ սեսիան ավարտում է իր աշխատանքները։

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ ՅՈԹՆԱՄՅԱԿՈՒՄ

Մ. ՇԱՀԲԱԶՅԱՆ

Հայաստանի կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորները պատվով ավարտեցին 1958 թվականի գյուղատնտեսական տարին։

Գյուղատնտեսական մթերքների արտադրությունն ավելացնելու, պետությանը բամբակի, շաքարի ճակնդեղի, հացահատիկի, մսի, կաթի և բրդի վաճառքի պլանները կատարելու և գերակատարելու գործում ձեռք բերած խոշոր հաջողությունների համար մեր ռեսպուբլիկան արժանացել է մեծագույն պատվի՝ պարգևատրվել է Լենինի շքանշանով։

Ռեսպուբլիկայի գյուղատնտեսության զարգացման ձեռք բերված մակարդակը նրան հնարավորություն է տալիս նախապատրաստված ձևով պայքարի մեջ մտնել կատարելու համար այն խնդիրը, որ դրել են պարտիան ու կառավարությունը գյու-

ղատնտեսական արտադրանքի հետագա շեշտակի վերելքի ուղղությամբ՝ 1959—1965 թվականներին։

Հայկական ՍՍՌ գյուղատնտեսության զարգացման այս առաջին էտապում վճռական նշանակություն է ձեռք բերում գյուղատնտեսական արտադրության ճիշտ տեղաբաշխման և գյուղատնտեսության մասնագիտացման հարցը՝ զուգակցված ռեսպուբլիկայի բնա-տնտեսական պայմանների հնարավորությունների օգտագործման հետ։

Հայաստանի մասնագիտացումը գյուղատնտեսության բնագավառում կատարվելու է արդյունաբերական խաղողագործության-պտղաբուծության և ինտենսիվ անասնաբուծության զարգացման ուղղությամբ։

Խաղողագործության - պտղաբուծության մասնագիտացման և խաղողի ու պտղատու այգիների հետագա ընդարձակման համար նախատեսվում է 1959—1965 թվականներին իրականացնել ջրային տնտեսության մեծ շինարարություն, որը ռեսպուբլիկայի ոռոգվող տարածությունները պետք է ավելացնի 38 հազար հեկտարով։ Պետք է ավարտվեն Թալինի և Արզնի-Շամիրամ ոռոգման և Կոտայքի ջրանցքի առաջին հերթերը, որոնք միասին վերցրած, յոթնամյակի ընթացքում



կոռոգեն 24 հազար հեկտար հող։ Ինչպես հայտնի է, այս ջրանցքները արդեն մասնակիորեն շահագործման են հանձնված և 1958 թվականին ոռոգել են 5 հազար հեկտար նոր խոպան հողեր։

Ոռոգվող հողերի ավելացման բազայի վրա յոթնամյակի ընթացքում կտնկվի 44 հազար հեկտար խաղողի և պտղատու այգի։

Խաղողի այգիների ընդհանուր տարածությունը յոթնամյակի ընթացքում, 1957 թվականի համեմատությամբ, կավելանա 2,1 անգամ, պտղատու այգիներինը՝ 2,5 անգամ, խաղողի համախառն արտադրանքը կավելանա 2,9 անգամ, պտուղներինը՝ 3 անգամ։ Արտադրության այսպիսի աճը տեղի կունենա ոչ միայն բազմամյա տնկիների տարածությունն ընդլայնելու, այլև բերքատվությունը բարձրացնելու միջոցով, այն հաշվով, որ 1965 թվականին պտղաբեր այգու ամեն մի հեկտարից ապահովվի ոչ պակաս քան 80 ցենտներ խաղողի և 60 ցենտներ պտուղների բերք։

Առաջիկա յոթնամյակում հայահատիկային տնտեսության հիմնական խնդիրը լինելու է հասարակական անասնաբուծության կերային բազայի ամրապնդումը և ռեսպուբլիկայի շատ շրջանների գյուղատնտե-

սական բնակչությանը սեփական արտադրության հացով ապահովելը։ 1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, հացահատիկի արտադրությունը ավելանալու է 23,2 տոկոսով։ Ընդ որում այդ մակարդակին պետք է հասնել միայն հացահատիկային կուլտուրաների բերքատվության բարձրացման ճանապարհով, այն հասցնելով 1965 թվականին հեկտարից ոչ պակաս, քան 13—14 ցենտների։

Ծխախոտագործությունը մեր գյուղատնտեսության արժեքավոր ճյուղերից մեկն է, բայց այն պատճառով, որ ծխախոտի մշակման համար բարենպաստ գոտիներում ոռոգման ենթակա հողերը այս յոթնամյակի ընթացքում սակավ են, ծխախոտի պլանտացիաները մոտակա ժամանակաշրջանում մեծ չափերով չեն ընդարձակվի։ Այդ պատճառով էլ ծխախոտի արտադրության աճը, որ ավելանալու է 1,4 անգամ, հիմնականում պետք է ապահովվի նույնպես բերքատվության բարձրացման շնորհիվ և 1965 թվականին հասցվի ոչ պակաս, քան հեկտարից 15—16 ցենտների։

Չի նախատեսվում նաև ցանքատարածությունների ընդարձակում բամբակի ու շաքարի ճակնդեղի գծով, բայց բամբակի ար-



տադրությունը, 1957 թվականի համեմատությամբ, աճելու է 23 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 14 տոկոսով, որը կատարվելու է միայն բերքատվության բարձրացման միջոցով, 1965 թվականին ապահովելով հեկտարից բամբակի ոչ պակաս քան 26—27 ցենտներ կայուն բերք ,իսկ շաքարի ճակնդեղի գծով՝ 250—260 ցենտներ։

Առաջիկա յոթնամյակում Հայաստանում ընդարձակվելու է խորդենու արտադրությունը, որը 1965 թվականին ավելանալու է 6,9 անգամ։

Խնդիր է դրված բանջարեղենի և կարտոֆիլի արտադրությունն ավելացնել այնպիսի չափերով ,որոնք լրիվին բավարարեն ռեսպուբլիկայի բնակչության պահանջները թարմ բանջարեղենի և պահածոների արդյունաբերության պահանջները հումքի նկատմամբ։ Դրան հասնելու համար նախատեսվում է 1965 թվականին ամեն մի հեկտարից ստանալ միջին հաշվով 209 ցենտներ բանջարեղեն և 108 ցենտներ կարտոֆիլ։ Ընդսմին բանջարաբուծության համախառն արտադրանքը, 1957 թվականի համեմատությամբ, կավելանա 1,5 անգամ, իսկ կարտոֆիլինը՝ 20 տոկոսով։

Ռեսպուբլիկայի քաղաքների և արդյունա-

բերական կենտրոնների աշխատավորներին բազմազան ասորտիմենտով և էժան գներով վաղահաս կարտոֆիլ ու թարմ բանջարեղեն մատակարարելու հարցը լուծելու համար, 1959—1965 թվականներին քաղաքամերձ գոտիներում կազմակերպվելու են մասնագիտացված սովխոզներ։

Գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացնելը և համախառն արտադրանքը նախատեսված չափերին հասցնելը պետք է ձեռք բերվի երկրագործության գիտականորեն հիմնավորված սիստեմի արմատավորման հիման վրա, ըստ ռեսպուբլիկայի յուրաքանչյուր գյուղատնտեսական գոտու, կոլտնտեսության և սովխոզի պայմանների։

Պետք է մշակվեն և կոլտնտեսությունների ու սովխոզների արտադրության մեջ արմատավորվեն խորապես մտածված, ճիշտ ցանքաշրջանառություններ։

Հայաստանի գյուղատնտեսության մյուս առաջատար ճյուղի՝ անասնաբուծության զարգացումը նույնպես պետք է ընթանա արագ թափով, այնպես, որ 1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, մսի արտադրությունը ավելանալու է 2,1 անգամ, կաթինը՝ 1,8 անգամ, բրդինը՝ 2 անգամ։



1965 թվականին, 1957 թվականի համեմատությամբ, կովերի գլխաքանակը պետք է աճի 35,3 տոկոսով, ոչխարներինը՝ 31,3 տոկոսով։

Մեծ զարգացում կստանան խոզաբուծությունը և թռչնաբուծությունը։ 1965 թվականին մսի արդյունաբերության մեջ խոզի մսի տեսակարար կշիռը կկազմի 21 տոկոս։

Առանձնահատուկ ուշադրություն է նվիրվելու անասնաբուծության տոհմային գործի բարելավմանը։ Ռեսպուբլիկայի բոլոր գոտիներում ստեղծվելու են տոհմային օրինակելի սովխոզներ և կոլտնտեսություններում՝ տոհմային ֆերմաներ՝ տնտեսությունները տոհմային մատղաշներով մատակարարելու համար։

Վճռական միջոցներ են ձեռք առնվելու կերային կուլտուրաների ցանքատարածությունները մեծացնելու, եգիպտացորենի ցանքատարածությունները մինչև 40 հազար հեկտարի հասցնելու, ներկայումս չօգտագործվող հողերը ցանելու, ամառային արոտավայրերի զգալի զանգվածները խոտհարքների վերածելու ճանապարհով անասնաբուծության կերային բազան ամրապնդելու ուղղությամբ։

Ենթադրվում է մոտակա տարիներին բազ-

մամյա խոտաբույսերի միջին բերքատվությունը հասցնել հեկտարից մինչև 45—50 ցենտների, սիլոսային կուլտուրաներինը՝ 300—350 ցենտների, բնական խոտհարքներինը՝ 20—25 ցենտների։

Գյուղատնտեսական աշխատանքի արտադրողականության բարձրացումը և գյուղատնտեսության շեշտակի վերելքի պլանների կատարումը զգալի չափով կախված է արտադրության մեքենայացման ու էլեկտրիֆիկացման ըստ ամենայնի ընդլայնումից։

Նախատեսվում է 1965 թվականին զգալիորեն բարձրացնել գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման մակարդակը։ Վարը կմեքենայացվի 93 տոկոսով, բամբակի և շաքարի ճակնդեղի մշակումը՝ 100 տոկոսով, ոչխարների էլեկտրական խուզը՝ 100 տոկոսով, խաղողի այգիների պլանտաժը՝ 100 տոկոսով, անասունների ավտոմատիկ կերպով ջրելը՝ 70 տոկոսով։

1960 թվականին Հայաստանում կավարտվի բոլոր կոլտնտեսությունների, սովխոզների, ՆՏԿ-ների էլեկտրիֆիկացումը։

Յոթնամյա պլանի իրականացումը է՛լ ավելի բարձր զարգացման կհասցնի մեր ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղատնտեսությունը։

---



# ԲԵՌԼԻՆԻ ՀԱՐՑԸ

Մ. ՎԱՍԻԼԵՎ

Համաշխարհային հասարակայնության ուշադրության կենտրոնում են գտնվում Բեռլինի հարցի կապակցությամբ Սովետական Միության առաջարկությունները, որոնք շարադրված են Ամերիկայի Միացյալ Նահանգներին, Անգլիային, Ֆրանսիային, Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկային, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկային ուղղված նոտաներում և պրեսկոնֆերանսում ընկեր Ն. Ս. Խրուշչովի ունեցած ելույթում։ Սովետական առաջարկությունները ուղղված են Բեռլինում տիրող դրության նորմալացմանը։

Երկրորդ համաշխարհային պատերազմի վերջանալուց հետո անցել է ավելի քան 13 տարի։ Գերմանիայի տերիտորիայում վաղուց արդեն գոյություն ունեն երկու ինքնուրույն պետություններ՝ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան և Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկան։ ԳԴՌ-ի կենտ-

րանում գտնվում է Բեռլին քաղաքը՝ ռեսպուբլիկայի մայրաքաղաքը։ Բայց Բեռլինը բաժանված է երկու մասի։ Այս քաղաքի դեմոկրատական հատվածում, որտեղ ապրում է 1,1 միլիոն մարդ, տեղավորված են ԳԴՌ-ի կառավարական մարմինները, իսկ նրա արևմտյան հատվածում, որն ունի 2,1 միլիոն բնակչություն, տեղավորված են ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի զորքերի կայազորները, որոնք օգտվում են օկուպանտների իրավունքներից։

Իսկ ինչո՞ւ մինչև այժմ Բեռլինում պահպանվում են օկուպացիոն ռեժիմի մնացուկները։ Արդյո՞ք դրա համար հիմք կա։ Այդպիսի հիմքեր չկան։ Դեռևս պատերազմի ժամանակ, 1944 թվականի աշնանը, ՍՍՌՄ-ը, ԱՄՆ-ը և Անգլիան համաձայնագիր ստորագրեցին Գերմանիայի օկուպացման գոտիների և Բեռլինի կառավարման մասին։ Այդ համաձայնագիրն իր հետագա զարգացումը գտավ Գերմանիայի օկուպացման առաջին տարիների համար Գերմանիայում վերահսկիչ մեխանիզմի մասին 1945 թվականի մայիսի 1-ին ՍՍՌՄ-ի, ԱՄՆի, Անգլիայի և Ֆրանսիայի միջև կնքված համաձայնագրում։ 1945 թվականի մայիսի 2-ին սովետական մարտիկները գրոհով վերցրին



Բեռլինը, ուր, նույն թվականի հուլիսին մտցվեցին արևմտյան տերությունների զորքերը, որոնք զբաղեցրին իրենց հատկացված հատվածները։ Գերմանիան համատեղ կառավարելու համար Բեռլինը սահմանվեց որպես հակահիտլերյան կոալիցիայի մասնակից չորս տերությունների կողմից ստեղծված Վերահսկիչ Խորհրդի նստատեղի։ Բեռլինը կառավարելու համար ստեղծվեց Վերահսկիչ Խորհրդին ենթակա քառակողմ միջդաշնակցային պարետություն։ Քանի որ հիտլերյան Գերմանիայի պետական ապարատը ոչնչացված էր և չորս տերություններն իրենց վրա էին վերցրել Գերմանիայի գերագույն իշխանությունը, ապա քառակողմ վերահսկողության մեխանիզմի նպատակը Գերմանիայում համատեղ քաղաքականության իրականացումն էր։ Այդ քաղաքականության հիմնական նպատակներն ու սկզբունքները որոշված էին ՍՍՌՄ-ի, ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարությունների ղեկավարների՝ Պոտսդամի կոնֆերանսի որոշումներում, որը տեղի ունեցավ 1945 թվականի հուլիսի 17-ից մինչև օգոստոսի 2-ը։ Պոտսդամի որոշումներին միացավ նաև Ֆրանսիան։

Պոտսդամի համաձայնագրերում չորս տե-

բությունների կառավարությունները պարտավորվում էին արմատախիլ անել մյուս ժողովուրդներին անթիվ տառապանքներ ու թշվառություններ պատճառած գերմանական միլիտարիզմն ու նացիզմը, մեկընդմիշտ կանխել դրանց վերածնումը և միջոցներ ձեռք առնել, որպեսզի Գերմանիան այլևս երբեք չսպառնա իր հարևաններին, ինչպես նաև միջոցներ ձեռք առնել խաղաղությունը ամբողջ աշխարհում պահպանելու համար։ Որոշված էր, որ Գերմանիան պետք է դիտվի որպես տնտեսական ամբողջություն, իսկ Բեռլինում պետք է ստեղծվեն կենտրոնական գերմանական վարչական դեպարտամենտներ։

Պոտսդամի համաձայնագրերը ամբողջությամբ իրականացվեցին միայն սովետական զորքերի կողմից օկուպացված Արևելյան Գերմանիայում։ Գերմանիայի այս մասում գերմանական ժողովրդի դեմոկրատական ուժերը արևմտյան տերությունների կողմից Գերմանիան պառակտելու փոխարեն ստեղծեցին բանվորների ու գյուղացիների իրենց իսկական դեմոկրատական և խաղաղասիրական պետությունը՝ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան։

Իսկ ի՞նչ մնաց Գերմանիայի վերաբերյալ



նախկին համաձայնագրերից։ Մնացել է միայն Բեռլինի այսպես կոչված քառակողմ ստատուսը, այսինքն՝ ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի օկուպացիոն ռեժիմը Արևմտյան Բեռլինում, թեպետ Գերմանիայի օկուպացման շրջանը վաղուց վերջացել է։ Պարզ է, որ խախտելով Գերմանիայի վերաբերյալ նախկին քառակողմ բոլոր համաձայնագրերը, արևմտյան տերությունները դրանով իսկ կորցրել են Արևմտյան Բեռլինը օկուպացնելու իրավական և բարոյական իրավունքը։ Սակայն նրանք մինչև այժմ համառ կերպով շարունակում են կառչել օկուպացիոն ռեժիմի այդ մնացորդներից, որպեսզի Արևմտյան Բեռլինը օգտագործեն ի վնաս Սովետական Միության, ԳԴՌ-ի և մյուս սոցիալիստական երկրների օրինական շահերի և անվտանգության։ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և ԳՖՌ կառավարող շրջանները Արևմտյան Բեռլինը վեր են ածել սոցիալիստական երկրների դեմ ուղղված լրտեսության և քայքայիչ գործունեության կենտրոնի, ստեղծելով այնտեղ 83 լրտեսական կազմակերպություն։ Պատահական չէ, որ Արևմուտքում Բեռլինի այդ մասը բացահայտորեն «ճակատային քաղաք» են անվանում։ Արևմտյան Բեռլինը վեր է ածվել կոնֆլիկտների ու պրովոկացիաների վտանգավոր օջա-

քի, տերությունների միջև երկպառակությունների ու կասկածանքների աղբյուրի։

Ահա թե ինչու ՍՍՌՄ կառավարությունը ելնելով Բեռլինում տիրող իրադրության նորմալացման շահերից, Եվրոպայի կենտրոնում խաղաղության պահպանման և ամրապնդման շահերից, գործնական քայլերի է ձեռնարկել Բեռլինի հարցի լուծման համար։ Սովետական կառավարությունը, նախ և առաջ համարելով ,որ Գերմանիայում վերահսկիչ մեխանիզմի մասին նախկին որոշումները ուժը կորցրել են, հայտարարեց ,որ ելնելով Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի սուվերենությունը հարգելու սկզբունքից, համապատասխան պահին բանակցությունների մեջ կմտնի ԳԴՌ-ի կառավարության հետ Արևմտյան Բեռլինի և ԳՖՌ-ի միջև եղած կոմունիկացիաները վերահսկելու ֆունկցիաները նրան հանձնելու մասին։

Իհարկե, Բեռլինի հարցը լուծելու լավագույն որոշումը կլիներ նրա արևմտյան մասի վերամիավորումը արևելյանի հետ, որպեսզի Բեռլինը դառնար միասնական քաղաք և մտներ այն պետության կազմի մեջ, որի հողի վրա գտնվում է, այսինքն՝ ԳԴՌ-ի կազմի մեջ։ Հաշվի առնելով, սակայն, որ



պատերազմից հետո անցած ժամանակաընթացքում Բեռլինի երկու մասերում ստեղծվել է տարբեր քաղաքական և տնտեսական կացութաձև, Սովետական կառավարությունը առաջարկեց Արևմտյան Բեռլինին տալ ազատ ապառազմականացված քաղաքի ստատուս, որն ունենա իր սեփական կառավարությունը և ինքնավարության այլ մարմինները։ Պատերազմից հետո Բեռլինի կառավարման մասնակցած չորս տերությունները և գերմանական երկու պետություններր կարող էին Արևմտյան Բեռլինի՝ որպես ազատ քաղաքի, ստատուսը հարգելու պարտավորությունը վերցնել իրենց վրա։ Ոչ մի պետություն չպետք է միջամտեր նրա ներքին գործերին։ Ազատ քաղաքի անկախություն կարող էր երաշխավորել նաև Միացյալ Ազգերի Կազմակերպությունը։ Այն կապակցությամբ, որ Արևմտյան Բեռլինը գտնվում է Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի տերիտորիայում, հարց կծագեր ազատ քաղաքի կողմից արտաքին աշխարհի հետ անարգել կերպով հաղորդակցելու երաշխիքի վերաբերյալ ԳԴՌ-ի հետ պայմանավորվելու մասին, իսկ Արևմտյան Բեռլինը ԳԴՌ-ի և այլ պետությունների դեմ իր տերիտորիայի վրա թշնամական և քայքայիչ

գործունեություն թույլ չտալու պարտավորություն կստանձներ։ Այս ամենը Արևմտյան Բեռլինի բնակչության օգտին կլիներ միայն, կնպաստեր քաղաքի էկոնոմիկայի զարգացմանը, որն այժմ լուրջ դժվարություններ է կրում։ Սովետական կառավարությունը հայտարարեց, որ ՍՍՌՄ-ը պատրաստ է օգնելու Արևմտյան Բեռլինին՝ նրա արդյունաբերության և առևտրի զարգացման գործում։

Սովետական կառավարությունը հայտարարեց իր պատրաստակամության մասին՝ Արևմտյան Բեռլինին ազատ ապառազմականացված քաղաքի ստատուս տալու մասին բանակցություններ սկսել շահագրգռված պետությունների հետ։ Արևմտյան Բեռլինը ազատ քաղաք հայտարարելու մասին բանակցելու նպատակով որոշակի ժամանակ ունենալու համար և որպեսզի Բեռլինի դրության անհրաժեշտ փոփոխությունը կատարվի հանգիստ իրադրության մեջ, Սովետական կառավարությունը մտադիր է ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի Արևմտյան Բեռլինից ԳՖՌ կատարվող ռազմական փոխադրումների գոյություն ունեցող կարգի մեջ փոփոխություններ չմտցնել կես տարվա ընթացքում։ Իսկ եթե այս ժամկետը չօգտագործվի համապատասխան պայմանավորվածություն



ձեռք բերելու համար, ապա Սովետական Միությունը նշած միջոցառումները կիրականացնի ԳԴՌ-ի հետ համաձայնության գալու ճանապարհով։

Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի կառավարությունը համաձայնեց Բեռլինի հարցի կապակցությամբ ՍՍՌՄ կառավարության արած առաջարկություններին։ ԳԴՌ-ի Մինիստրների Սովետի նախագահ Օտտո Գրոտեվոլը հայտարարեց, որ չնայած և Բեռլինը ԳԴՌ-ի մայրաքաղաքն է, ռեսպուբլիկայի կառավարությունը այնուամենայնիվ պատրաստ է մեծ զիջում անելու և համաձայնելու, որ Արևմտյան Բեռլինը դառնա ապառազմականացված ազատ քաղաք, քանի որ դա ծառայում է խաղաղության պահպանման և Գերմանիայի խաղաղ ճանապարհով միավորվելու գործին։ ԳԴՌ-ի աշխատավորները բազմաթիվ ժողովներում և միտինգներում միահամուռ կերպով հավանություն տվեցին Սովետական Միության խաղաղասիրական նախաձեռնությանը։ Դեմոկրատական Գերմանիայի ազգային ճակատը ԳԴՌ-ի, ԳՖՌ-ի և Բեռլինի երկու մասերի հասարակայնության ներկայացուցիչների անունից Սովետական կառավարությանը շնորհակալական նամակ է ուղարկել

Բեռլինի դրության նորմալացման առթիվ արած առաջարկությունների համար, որպես «ամբողջ գերմանական ժողովրդի ազգային շահերին» համապատասխանող առաջարկություններ։ «Նոյես դոյչլանդ» թերթը գրում է, որ Բեռլինում օկուպացիոն ռեժիմի պահպանումը ոչ միայն աբսուրդ է քաղաքական տրամաբանության և առողջ մարդկային բանականության տեսակետից, այլև անարդարացի գերմանական ժողովրդի նկատմամբ։

Սովետական կառավարության նոր խաղաղասիրական նախաձեռնությանը հավանություն տվեցին սոցիալիստական լագերի բոլոր երկրների կառավարություններն ու ժողովուրդները, ողջ աշխարհի պրոգրեսիվ հասարակայնությունը, այն գնահատելով որպես լուրջ ավանդ խաղաղության ամրապնդման գործում։

Բեռլինի հարցի առթիվ Սովետական Միության առաջարկությունները դրական արձագանք են գտել արևմտյան մամուլի շատ օրգանների էջերում։

Բեռլինի հարցը կարող է և պետք է լուծվի հօգուտ խաղաղության և համաշխարհային համագործակցության։

---

## СОДЕРЖАНИЕ


Стр.

**Материалы для бесед**

В. Казанчян—Живут, побеждают великие ленинские идеи . . . . . . 1

За благо народа . . . . . . 15

Вторая сессия Верховного Совета СССР . 25

М. Шахбазян—Развитие сельского хозяйства Армении в семилетии . . . 31

**Международные темы**

М. Васильев—Берлинский вопрос . . . 39



Խմբագիր՝ Վ. ԲՋՆՈՒՆԻ